## ՎԱՐԴԱՎԱՌ

### ՓԱՐԻԶ

Այս Կիրակի Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյն մէջ պիտի մատուցուի հանդիսաւոր քառաձայն Ս. պատարագ, Վարդավառի տօնին առթիւ:

Երկուշաբթի, (10 Յուլիս) Մեռելոց, պատարագ ժամը 10ին:

Կը հրաւիրուի հայ հասարակութիւնը:

×

### ՇԱԻԻԼԻ ԵԿԵՂԵՑԻ

Վարդավառի տօնին առթիւ Ս. պատարագ տեղի կ'ունենայ այս Կիրակի:

Կը հրաւիրուի հաւատացեալ ժողովուրդը:

×

### ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Մայր եկեղեցիի վարչութիւնը կը ծանուցանէ թէ՝ այս Կիրակի Վարդավառի տօնը կը կատարուի հանդիսաւոր արարողութեամբ: Մեռելոցի հոգեհանգիստ Երկուշաբթի օր: Մասնաւոր հոգեհանգիստներ Կիրակի եւ Բշ. օր:

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Տարօն - Տուրուբերանի 1915ի նահատակներուն յիշատակին, այս Կիրակի առաւօտ (Վարդավառ) հոգեհանգիստ պիտի կատարուի Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցւոյ մէջ:

Կը հրաւիրուին հայրենակիցները եւ բարեկամները յարգելու համար անմեղ զոհերուն յիշատակը:

×

Տէր եւ Տիկին Միհրան Քէհեայեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս ԵՐԿՈՒՇԱԲԹԻ առաւօտ (Մեռելոց) Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, իրենց զաւակներուն եւ քոյրերուն՝

ԺԱԳԼԻՆԻ եւ ԷՕԺԷՆԻԻ

յիշատակին (զոհ Իսիի աղէտին):

Կը հրաւիրուին տարաբախտ երիտասարդուհիներուն յիշատակը յարգողները:

### Ֆ. Կ. ԽԱՉԻ «ՕՐ»ՈՒԱՆ ԱՌԹԻԻ

## ՄԵԾ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

Նախաձեռնութեամբ Ֆ. Կապոյտ Խաչի Լիոնի մասնաճիւղի:

Այս Կիրակի առաւօտէն մինչեւ երեկոյ, Տէսինի Կապիյօն սրճարանի զովասուն պարտէզներուն մէջ Ջրանցքին եզերքը:

Գեղարուեստական բաժին եւ զանազան անակնկալներ:

Բարձրախօսի վրայ անընդհատ լսելի պիտի ըլլան հայկական սալեր:

Ծօխ պիւֆէ, համադամ ուտելիքներ եւ զովացուցիչ ըմպելիներ:

Ընտանեկան հաճելի եւ ուրախ զուարթ մթնոլորտ:

ԾԱՆՕԹ.— Օթօքառը առաւօտ Փլաս Կիչառէն կը մեկնի ժամը ճիշդ 9ին: Կը խնդրուի ճշդապահ ըլլալ: Անձրեւի պարագային պատսպարուելիք վայրը ապահովուած է:

ԻՏԱԼԻԱ ԵՒ ԱՒՍՏՐԻԱ

### ՎԵՆԵՏԻԿ - ԹԻՐՈԼ - ՎԻԷՆՆԱ

ԽՄԲԱԿԱՆ ՃԱՄԲՈՐԴՈՒԹԻՒՆ

Վիէննայի Մխիթարեան Միաբանութեան 4 յոբելեաններուն առթիւ:

Օգոստոս 11 — Սեպտեմբեր 4

Ճամբորդութիւնը կը կազմակերպէ և խումբը կ'առաջնորդէ Հ. Սամուէլ վ. Արամեան:

Մանրամասն տեղեկութիւններու համար դիմել՝

Առաւօտուն, ժամը 9 - 13՝

10 bis, Rue Thouin - PARIS (5e)

Tél. : ODEon 02-12

Կէսօրէ ետք, ժամը 13 - 17՝

E. DJEZIRIAN

27, Fbg. Montmartre, Paris (9e)

Tél. : PRO. 35-85

26 օր, Փարիզէն Փարիզ, ճամբորդութիւն, բնակութիւն եւ ճաշ՝ 550 Ն. Ֆ.:

## Հ. Յ. Դ.

ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՇԱԻԻԼ.— Հ. Յ. Դ. «Արզութեան» խումբի ժողովը այս Շաբաթ երեկոյ ժամը 9ին, սովորական հաւաքատեղին:

## ՀԵՐՈՍՆԵՐՈՒ ՕՐԸ

### ՍԷՆ ՇԱՄՈՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Սէն Շամոնի «Վարուժան» կոմիտէի եւ մասնակցութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Վարդգէս» խումբին:

Կիրակի, Յուլիս 9, ամբողջ օրը, Փոն Անթէնի (Վարիզել) զովասուն պարտէզին մէջ:

Կը նախագահէ՝ Ընկ. ՏԻԳՐԱՆ ԱՋՆԱԻՈՒՐԵԱՆ:

Գեղարուեստական բաժին՝ երգ, արտասանութիւն եւ զանազան խաղեր:

Ուտելիքները միասին բերել, բացի խմիչքէն:

## Կ'ՈՒԶՈՒԻ

ՍԷՆ ԺՈՐԺ ՊԱՆԴՈԿԸ կը փնտռէ ներկայանալի երիտասարդ լուրջ Օրիորդ մը, հոթելըրիի համար: Նոյնիսկ առանց մասնաւոր ծանօթութեան: Բնակութիւն եւ ճաշ: Հեռաձայնել.— 16 Լա Ռոշ Կիյոն: (Սէն է Ուազ):


JACQUES TORANIAN

Agent Immobilier

Assureur Conseil.

Ձեզի պիտի ընդունի ամէն օր իր գրասենեակը

RIVE GAUCHE IMMOBILIER

42, Bld. Arago — Tél. : POR. 03-94

կամ ձեզի կ'այցելէ ժամադրութեամբ ՓԱՎԻՅՈՆՆԵՐՈՒ, ՅԱՐԿԱԲԱԺԻՆՆԵՐՈՒ, ՇԷՆՔԵՐՈՒ (fo-փրոփրիէթէ) ՀՈՂԵՐՈՒ, ԱՌԵՒՏՐԱԿԱՆ ՅԱՐԿԱԲԱԺԻՆՆԵՐՈՒ, ԽԱՆՈՒԹՆԵՐՈՒ, ԱՌՈՒԾԱԽԻ ձեր բոլոր խնդիրներուն համար

Expertise Gratuite

Ձեր տրամադրութեան տակ է նաեւ բոլոր ապահովագրութեանց համար

Auto

Incendie

Dégâts des eaux

Vie

— PRIX ETUDIES —

Tous risques assurés


## ՄԵԾ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

Կազմակերպուած Կապոյտ Խաչի Մարսէյլի մասնաճիւղին կողմէ, Յուլիս 9ին, Լա Ֆէվ, Պառ Շարլ, առաւօտէն մինչեւ ուշ գիշեր:

Կը խօսի ՏԻԿԻՆ Վ. ՀԱՋԱՐԵԱՆ

Գեղարուեստական խնամուած բաժին, երգ, Օր. Փօլէթ Արզումանեան, խմբերգ, մեներգ, արտասանութիւն, զաւեշտ Կապ. Խաչի աշակերտներուն կողմէ: Ժամը 16էն սկսեալ հայկ. եւ եւրոպական պարեր:

Պիւֆէ, չամփուրով խորոված:

Մուտքը ազատ է:


## ՃԱՄԲՈՐԴՈՒԹԻՒՆ

ԴԷՊԻ

ԵՐԵՒԱՆ

Երեք շաբաթը անգամ մը

ՆԱՒՈՎ

ՄԱՐՍԷՅԼԷՆ ուղղակի դէպի ԵՐԵՒԱՆ

Երթուդարձի գիներն են, կերակուրով լերադարձին կարելի է Վենետիկ իջնել

13 ՕՐ ԵՐԵՒԱՆ

Պանդոկի մէջ բնակութեամբ եւ սնունդով

| | |
|---|---|
| Բ. կարգ | 3046 Ն. Ֆ. |
| Գ. կարգ | 2506 Ն. Ֆ. |

ԶԵՂՉ խմբովին ճամբորդողներուն:

ՈՒՂԵԳՈՅՔԻ իրաւունք, անձ գլուխ, 150 քիլօ՝ Բ. կարգի եւ 100 քիլօ՝ Գ. կարգի ճամբորդներուն:

Նոյն ճամբորդութիւնը օդանաւով կամ երկաթուղիով:

Մեր գրասենեակը կը զբաղի նաեւ դէպի Ամերիկա, Սուրիա եւ այլ ճամբորդութիւններով:

ԴԻՄԵԼ՝

ԺԱՆ-ԵՂԻՇԷ ԱՐԶՈՒՄԱՆԵԱՆ

ՄԱՐՍԷՅԼ

48, Rue de la République

Tél.: 20.47.22

MARSEILLE

●

ՓԱՐԻԶ

Մասնաճիւղ

7, Rue Auber, 7

Tél : RIC. 63-69

PARIS (9e)


Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴ

ԴԱՇՏԱԳՆԱՑՈՒԹԻՒՆ

Joinville le Pont

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Ահարոնեան» խումբի կողմէ, Կիրակի Յուլիս 9:

Կը հրաւիրուին Նոր Սերնդականներ եւ համակիրներ:

Ժամադրավայր՝ Շաթօ տը Վենսէն, ժամը 10ին:

Imprimerie Spéciale du journal « Haratch » 32, Rue de Trévise, PARIS (9e)

## Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ՃԱՄԲԱՐ

### ՕԳՈՍՏՈՍ 1 - 31

### AGDE (Hérault)

Միջերկրականի կապոյտ ջուրերու ափին: Խաղաղաշտ եւ լոգանք: Խմբական պտոյտներ, դասախօսութիւններ եւ գեղարուեստական երեկոյթներ:

ՕՐԱԿԱՆ 9.50 Ն. Ֆ.

Արձանագրութեան համար դիմել՝ ամէն Ուրբաթ երեկոյեան ժամը 8էն - 10, եւ Շաբաթ օրերը ժամը 4 - 8, 17 Րիւ Պզօ:

Գաւառը դիմել հետեւեալ հասցէներուն.—

ՄԱՐՍԷՅԼ.— Գազարեան Վուայաժանս, 31, Լա Քանըպիէռ:

ԼԻՈՆ.— Պէրպէրեան, 39 Րիւ Տիւնուառ:

ՎԱԼԱՆՍ.— Մաղաքեան, 14 Րիւ Ֆրանքլէն:

ՏԷՍԻՆ.— Լիւլէճեան, 16 Րիւ Քոլի:

ՍԷՆԹ ԷԹԻԷՆ.— Խրիմեան, 2 Րիւ Ռապըլէ:

ՆԻՍ.— Գաբրիէլեան, 19 Պուլվ. Մանեան:


CARINE ALEXANDRA

Couture Boutique

SALONS DE VENTE

5, RUE SAULNIER (entresol), PARIS 9e

Tél.: TAI. 82-18, Métro: Cadet ou Montmartre



BERN'S

prêt à porter industriel

ATELIERS:

17, Rue Cadet, Paris 9e

Tél. : TRUdaine 45-42

ՊԵՐՃ ԷՔՍԷԵԱՆ ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆ

ROBES, TAILLEURS, MANTEAUX, IMPERMEABLES, PANTALONS DE DAMES (DANS NOS TISSUS EXCLUSIFS) VÊTEMENTS DE PEAU, COLIFICHETS

Chaque semaine un article publicitaire

Cette semaine : ROBE, SOIE NATURELLE IMPRIMÉE 89 NF.

